# ՏԻԳՐԱՆ ՋՈՒՀԱՃԵԱՆ
# DIKRAN TCHOUHADJIAN

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ
## ՓՈՂԱՅԻՆ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲԻ ՀԱՄԱՐ

## WORKS FOR WIND BAND

# DIKRAN TCHOUHADJIAN

## WORKS FOR WIND BAND

Edited by
HAIG AVAKIAN

Cairo 2005

# ՏԻԳՐԱՆ ՉՈՒՀԱՃԵԱՆ

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ
## ՓՈՂԱՅԻՆ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲԻ ՀԱՄԱՐ

Խմբագրութիւն՝
ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Գահիրէ 2005

# ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կու գամ խորին շնորհակալութիւններս յայտնելու Գահիրէի ՀԲԸՄ-ի վարչութեան՝ որ ընդունեց հոգալ այս հատորի տպագրութեան ծախսերը։

Շնորհակալութիւն Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի տնօրէն՝ տոքթ. Հենրիկ Բախչինեանին, երաժշտական բաժինի աւագ ֆոնտապահ՝ Մարինէ Մուշեղեանին, երաժշտական բաժինի վարիչ՝ Ցօղիկ Բեքարեանին եւ միւս աշխատակիցներուն՝ որոնք բոլոր դիւրութիւնները ընծայեցին ինծի ուսումնասիրելու Թանգարանի Տ. Չուհաճեանի դիւանին նիւթերը։

**Հ. Ա.**

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Նախաչուհաճեանական շրջանի հայկական փողային երաժշտութեան պատմութեան մասին հասած են լոկ սակաւաթիւ տեղեկութիւններ: Գիտենք՝ որ 1850-ականներուն, Սեւաստոփոլի նաւահանգիստին մէջ՝ ծովակալի յաղթական վերադարձը ողջունելու համար, եւ ապա նոյն քաղաքին մէջ տեղի ունեցած զօրահանդէսին, Անդրէաս Քաղցածեան (1809–1856) ղեկավարած է իր յօրինած *Զու ի Սինոպ* ստեղծագործութիւնը[1]: Կատարումներուն չարժառիթները կը յուշեն՝ որ փողային նուագախումբի համար գրուած գործ մը ըլլալու է ան: Հաւանաբար, անկէ քիչ ժամանակ առաջ յօրինած *Զու, հաճոյք Խարասու-Բազարի* ստեղծագործութիւնը եւս նախատեսուած ըլլայ փողային կազմի համար[2]: Քաղցածեանի այս երկու գործերը տպագրուած են դաշնակի փոխադրութեամբ[3], միւսները՝ անդարձ կորսուած:

Տիգրան Չուհաճեանէն (Կ. Պոլիս, 1837 – Զմիւռնիա, 1898) մեզի հասած են փողային նուագախումբի չորս քայլերգի նուագագրութիւններ (orchestral score), որոնց ձեռագիրները կը պահուին Երեւանի Զարենց Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Չուհաճեանի դիւանին (այսուհետեւ՝ **ԶԳԱԹ ՉԴ**) մէջ:

Քայլերգներէն երեքը գրուած են փայտէ եւ պղինձէ փողայիններու եւ հարուածայիններու (wind band) համար, եւ մէկը՝ պղինձէ փողայիններու (brass band): Բոլորն ալ խորագրուած են Marcia (Քայլերգ): Նկատի ունենալով՝ որ անոնց յօրինումին թուականները անյայտ են, զանոնք պայմանականօրէն իմ կողմէս թուագրեցի 1–4:

Չուհաճեան փողային նուագախումբ գործածած է նաեւ *Արշակ Բ.*ի նուագագրութեան մէջ (աւարտած 1868-ին)՝ իբրեւ բեմական նուագախումբ (stage band): Յաջորդող օփերա-օփերէթները՝ *Արիֆ* (1872), *Քէօսէ Քէհեա* (1875), *Լէպլէպիճի Հօր-հօր աղա* (1875) եւ *Զէմիրէ* (1888) փողային նուագախումբեր չեն բովանդակեր: *Արշակ Բ.*ի փողային նուագախումբը՝ ինչպէս սովորութիւն էր այդ ժամանակուայ օփերայի բեմական նուագախումբերուն, չէ գործիքաւորուած, այլ գրուած դաշնակի զոյգ հնգագիծերու վրայ, որով անկարելի է նուագարանային կազմին մասին գաղափար կազմել:

Չորս քայլերգներուն ինքնագիր ձեռագիրները եւ օգտագործուած թուղթերը շատ նման են *Արշակ Բ.*ի ձեռագիրին (**ԶԳԱԹ ՉԴ** 8 (**ՀԹ** 3))[4]: Այս հանգամանքը ենթադրել կու տայ՝ որ Չուհաճեան զանոնք յօրինած ըլլալու է 1860-ականներուն: Բայց ո՞ւր յօրինած է՝ Միլա՞ն, ուր 60-ականներու առաջին կէսին գացած էր ուսանելու, թէ՞ Պոլիս: Եւ ի՞նչ է արդեօք անոնց կիրառական նշանակութիւնը՝ ո՞ր նուագախումբին կամ ի՞նչ նպատակի համար յօրինած է զանոնք: Այս բոլոր հարցերը ցարդ կը մնան անպատասխան:

Ահաւասիկ այն ձեռագիրները՝ որոնց հիման վրայ իրականացուած է այս հրատարակութիւնը.

## MARCIA [No. 1]
## ՔԱՅԼԵՐԳ [Թիւ 1]

Ձեռագիրը հետեւեալն է.

**ԶԳԱԹ ՉԴ**, թիւ՝ 87 (**ՀԹ** 37): **Խորագիր՝** Marcia: **Հեղինակ՝** D. Tchouhadjian: **Երաժշտական կազմ՝** նուագագրութիւն: **Թուական՝** անթուակիր: **Թերթ՝** 10: **Գրիչ՝** Տ. Չուհաճեան: **Գրչատեսակ՝** տուշագիր: **Մեծութիւն՝** 32.8x25.9 սմ.:

## MARCIA [No. 2]
## ՔԱՅԼԵՐԳ [Թիւ 2]

Ձեռագիրը հետեւեալն է.

**ԶԳԱԹ ՉԴ**, թիւ՝ 120 (**ՀԹ** 88): **Խորագիր՝** [Marcia]: **Հեղինակ՝** [D. Tchouhadjian]: **Երաժրշտական կազմ՝** նուագագրութիւն: **Թուական՝**

անթուակիր: Թերթ՝ 10: Գրիչ՝ Տ. Ջուհաճեան: Գրչատեսակ՝ տուշագիր: Մեծութիւն՝ 23.9x32.4 սմ.:

Ձեռագիրը չէ խորագրուած, բայց ան անկասկած Քայլերգ մըն է: Այս ստեղծագործութեան ուրիչ տարբերակ մը ներկայացնող ինքնագիր ձեռագիր մը երաժշտահանին կողմէ խորագրուած է Marcia, որուն ձեռագիրը հետեւեալն է.

**ԶԳԱԹ ԶԴ**, թիւ՝ 115 (ՀԹ 81): Խորագիր՝ Marcia: Հեղինակ՝ [D. Tchouhadjian]: Երաժշտական կազմ՝ նուագախումբի առանձին նուագարաններ: Թուական՝ անթուակիր: Թերթ՝ 8: Գրիչ՝ Տ. Ջուհաճեան: Գրչատեսակ՝ մատիտագիր: Մեծութիւն՝ 25.7x33.2 սմ.:

**Բովանդակութիւն.**

Cornetta Si b, էջ 1-2

Violino, էջ 3-4

Flauto, էջ 5-6ա

Violoncelli, էջ 7-8

Գոյութիւն ունեցա՞ծ են արդեօք այլ նուագարաններ՝ որոնք կորսուած են թղթածրարէն: Դժուար է որոշել: Կարեւորը այն է՝ որ թիւ 115-ը կը ներկայացնէ թիւ 120-ին տարբերակը եւ խորագրուած է Marcia:

## MARCIA [No. 3]
## ՔԱՅԼԵՐԳ [Թիւ 3]

Ձեռագիրը հետեւեալն է.

**ԶԳԱԹ ԶԴ**, թիւ՝ 86 (ՀԹ 36): Խորագիր՝ Marcia: Հեղինակ՝ D. Tchouhadjian: Երաժշտական կազմ՝ նուագագրութիւն: Թուական՝ անթուակիր: Թերթ՝ 5: Գրիչ՝ Տ. Ջուհաճեան: Գրչատեսակ՝ տուշագիր: Մեծութիւն՝ 24.5x31.1 սմ.:

## MARCIA [No. 4]
## ՔԱՅԼԵՐԳ [Թիւ 4]

Ձեռագիրը հետեւեալն է.

**ԶԳԱԹ ԶԴ**, թիւ՝ 89ա (ՀԹ 38): Խորագիր՝ [˚] Marcia: Հեղինակ՝ D. Tchouhadjian: Երաժշտական կազմ՝ նուագագրութիւն: Թուական՝ անթուակիր: Թերթ՝ 4: Գրիչ՝ Տ. Ջուհաճեան: Գրչատեսակ՝ սեւ մելան: Մեծութիւն՝ 24.2x29.6 սմ.:

Խորագիրը ուժեղ մելանով ջնջուած է: Մնացած հետքերէն կարելի է նկատել՝ որ խորագիրը կազմուած է երկու բառէ, որուն երկրորդն է՝ Marcia: Հաւանաբար, առաջին բառը պարունակած ըլլալու է օսմաներէն գրաքննութեան անհաճոյ իմաստ:

* * *

Չորս քայլերգներուն մէջ օգտագործուած քանի մը նուագարաններ կարիք ունին պարզաբանումի:

**ԺԹ.** դարու փողային նուագախումբերու նուագարաններուն գործածութիւնը եւ անոնց անուանումները կը ներկայացնեն խիստ խառնաշփոթ իրավիճակ մը: Իւրաքանչիւր տասնամեակ, իւրաքանչիւր երկիր ու քաղաք կրնար ունենալ տուեալ նուագարանի իր անձնական անուանումը: Այս նուագարաններուն մէկ մասը **Ի.** դարուն դարձան անգործածելի (obsolete) եւ ոմանց հետքերուն երբեմն կը դժուարանայ հետեւիլ արդի երաժշտագիտութիւնը: Այս առումով, Ջուհաճեանի չորս քայլերգները բացառութիւն չեն կազմեր:

Քայլերգ թիւ 2-ին (ձեռագիր թիւ 120) վերի երկու հնգագիծերուն վրայ (փայտէ փողային առաջին երկու նուագարանները) գրուած է *pic[c]olo flauto Mi b* եւ *ottavino Re b*: Տեսականօրէն, *piccolo flauto* (կամ՝ *flauto piccolo*) եւ *ottavino* կը հանդիսանան միեւնոյն նուագարանին իտալերէն երկու անուանումները, որոնք երկուքն ալ կը գործածուէին: Ինչպէս Քարլ Կէյրինկէր կը նշէ՝ «Փոքր սրինգը [piccolo Flute]՝ շնորհիւ իր սուր, ուժեղ հնչիւններուն, յատկապէս արժեւորուած էր ռազմական նուագախումբերու մէջ (ուր *ռէ պեմոլ* եւ *մի պեմոլ* նուագարանները եւս կը գործածուէին)»[5]:

Յստակ է՝ որ Զուհաճեանի անուանումները նկատի ունին նոյն նուագարանին երկու փոխադրուող (transposed) տեսակները:

Քայլերգներ թիւ 2, 3 եւ 4-ին (ձեռագիրներ թիւ 120, 86 եւ 89ա) մէջ օգտագործած է *biugolo in Mi b* եւ *corno segnale in Si b*: Առ այժմ, դանց կ'առնեմ Քայլերգ թիւ 3-ի (ձեռագիր թիւ 86) *corno segnale II*-ն, որուն մասին պիտի անդրադառնամ ստորեւ: Ի՞նչ նուագարաններ են, ուրեմն, անոնք:

Տարբեր հանգամանքներ ցոյց կու տան՝ որ այս գործերուն մէջ անուանուած *biugolo*-ն եւ *corno segnale*-ն միեւնոյն նուագարանի՝ բանալիով եղջերափողի (keyed-bugle), փոխադրուող երկու տարբերակներն են՝ ***մի պեմոլ*** եւ ***սի պեմոլ*** լարուածքներով, զորս Զուհաճեան անուանած է տարբեր անուններով:

Բանալիով եղջերափողը պղինձէ փողային սոփրանօ նուագարան մըն է: Ան «երեւան եկած է 1810-ին մօտերը բայց որուն գործածութիւնը նուազած է արդէ քորնէթին յայտնութեամբ», կը գրէ ***Երաժշտութեան Օքսֆորտ բառարան***ի հեղինակը[6]: «Ան գլխաւորապէս կը գործածուէր ռազմական երաժշտութեան սոփրանոյի նուագամասերուն համար», դիտել կու տայ Կէյրինկէր[7]: Ռալֆ Տիւտնըն կը նշէ՝ թէ «սկզբնական բանալիով եղջերափողերը լարուած էին ***տօ***ի մէջ՝ ոլորքով [crook] դէպի ***սի պեմոլ***: Յետագային, հանդէս եկան զանազան բանալիներով ուրիշ եղջերափողեր, որոնցմէ ամենասովորականն էր բարձր ***մի պեմոլը***»[8]: Իսկ Արնոլտ Մայըրսի կարծիքով՝ «ան ճկուն եւ բազմակողմանի նուագարան մըն է, միակ սոփրանօ արագաշարժ պղինձէ նուագարանը՝ որ ամբողջապէս բաղադրեալ [chromatic] է: Թէեւ բանալիով շեփորը [keyed trumpet] արդէն գործածութեան մէջ էր եւրոպական ցամաքամասին մէջ, սակայն, բանալիով եղջերափողը կը թուէր ըլլալ անկախ գիւտարարութիւն մը»[9]:

Բանալիով եղջերափողին նախատիպը հանդիսացող եղջերափողը (bugle) իտալերէն կը կոչուէր *corna da segnale*[10] կամ *cornetta segnale*[11]: Իտալերէն *segnale* կը նշանակէ «ազդանշան»: Այս անուանումը բխած էր նուագարանին առանձնայատկութենէն, քանզի եղջերափողը կը հանդիսանար ազդանշանի նուագարան մը ռազմական եւ այլ գործածութիւններու համար եւ կը սահմանափակուէր քանի մը ձայնանիշով: Բանալիներու յաւելումով (բանալիով եղջերափող) ան դարձաւ ամբողջական ձայնաշարով նուագարան մը, բայց երբեմն շարունակուեցաւ գործածուիլ իր հին անուանումներով: Եոզէֆ Քիւֆնէր (Joseph Küffner) 1823-ին յօրինած է բանալիով եղջերափողի եւ նուագախումբի համար *Polonaise* մը, ուր մենանուագ բանալիով եղջերափողը անուանած է *cor de signal-à-clef obligée* (ազդանշանի փող պարտադիր բանալիով)[12], իսկ ֆրանսացիները զայն անուանելով *cor à clef* (բանալիով փող)՝ ընդգրկած են օփերայի նուագախումբի կազմին մէջ, ինչպէս՝ Ռոսինիի *Semiramide*-ն (1823) եւ Քրէօցէրի *Ipsiboé*-ն (1824)[13]: Տարածուած էին նաեւ *cor de signal à 7 clefs* (ազդանշանի փող 7 բանալիով), *cor de signal à 9 clefs* (ազդանշանի փող 9 բանալիով) եւ այլ նմանատիպ անուանումներ[14]:

Ընդհանրապէս, բանալիով եղջերափողին իտալացիները կ'անուանեն *cornetta a chiavi*[15]: Բայց Զուհաճեան հետեւած է ֆրանսերէն *cor de signal à clef* անուանումի իտալերէն թարգմանութեան, ձեռագիրին մէջ պարզապէս կրճատելով վերջին *à clef*-ը: Զուհաճեանի *corno segnale*-ն, բնականաբար, չի կրնար հին եղջերափողը (bugle) ըլլալ, քանի որ առաջինը ունի ամբողջական ձայնաշար: Նոյնպէս, *biugolo*-ն եւս իտալերէն թարգմանութիւնը ըլլալու է ֆրանսերէն կամ անգլերէն *bugle* բառին (անգլերէն հնչիւբանութիւնն է՝ պիուկլ), բայց նոյնպէս չի կրնար հին եղջերափողը ըլլալ:

Բայց կրնա՞յ ըլլալ՝ որ այս երկու նուագարանները ներկայացնեն փականով եղջերափողը (valved bugle), որ կը կոչուի *flugelhorn* (անգլերէն), *bugle* կամ *grand bugle* (ֆրանսերէն), *flicorno soprano* (իտալերէն): Փականով եղջերափողը բխած է բանալիով եղջերափողէն, սկսած է աստիճանաբար տարածուիլ 1830-ականներուն սկիզբը, իսկ 1860-ականներուն արդէն փոխարինած է վերջինին[16]: Զուհաճեան անպայմանօրէն չէր՝ որ կը հետեւէր միջազգային նորոյթներուն: Բաց աստի, ան կապուած էր մեզի անյայտ այն նուագախումբի կազմին հետ՝ որուն համար յղացուած էին քայլերգները:

Թէեւ դժուար է այս հարցին վստահօրէն պատասխանել, բայց առ նուազն երաժշտահանի օգտագործած անուանումները կը յուշեն՝ որ այդ երկու նուագարանները եղած ըլլան բանալիով եղջերափողեր:

Նուագարաններու ձայնածաւալին առումով, Զուհաճեանի *corno segnale in Si b*-ները կը ներ-

կայացնեն հետեւեալ պատկերը.

Marcia No. 2
corno segnale in Si b
գրուած ձայնածաւալ



իրական հնչողութիւն



Marcia No. 3
corno segnale I in Si b
գրուած ձայնածաւալ



իրական հնչողութիւն



Marcia No. 4
corno segnale I in Si b
գրուած ձայնածաւալ



իրական հնչողութիւն



Marcia No. 4
corno segnale II in Si b
գրուած ձայնածաւալ



իրական հնչողութիւն



Ուրեմն, երեք քայլերգները միասին ընդունելով՝ նուագարանին ամբողջական ձայնածաւալը կ’ըլլայ հետեւեալը.

գրուած ձայնածաւալ



իրական հնչողութիւն



Ամբողջ տեւողութեան ընթացքին միայն մէկ անգամ գործածուած է միջին *տօ*ին (middle C) վարը գտնուող *լա* ձայնանիշը՝ Քայլերգ թիւ 4-ի *corno segnale II*-ին մէջ, ան ալ արագ 32-րդական ձայնանիշով (հատուած 17)։ Միւս բոլոր պարագաներուն, ամենացած հնչիւնը միջին *տօ*ն է։ Բացառուած չէ (թէեւ ապացուցուած ալ չէ)՝ որ այս *լա*ն ըլլայ անուշադրութեան արդիւնքը։

Ընդհանրապէս, բանալիով եղջերափող *սի պեմոլ*ը ունի հետեւեալ բաղադրեալ (chromatic) ձայնածաւալը[17].

գրուած ձայնածաւալ



իրական հնչողութիւն



Եթէ զանց առնենք անցողակի կերպով Զուհաճեանի գործածած յիշեալ միայնակ *լա*ն, Քայլերգներուն ձայնածաւալը դիւրութեամբ կը համապատասխանէ բանալիով եղջերափողին այս ձայնածաւալին։

Իսկ փականով եղջերափող *սի պեմոլ*ը քիչ մը աւելի ցած է բանալիով եղջերափողէն[18].

գրուած ձայնածաւալ



իրական հնչողութիւն



Զուհաճեան ընդհանրապէս չէր ձգտեր օգտագործել նուագարաններու ամենավերի, լարուած ձայնանիշերը։ Այս առումով, աւելի հանգիստ է բանալիով եղջերափողին ձայնածաւալը։ Բայց ի՞նչ բացատրութիւն տալ վարի *լա*յին։ Եթէ ընդունինք՝ որ ան անուշադրութեան ար-

դինք չէ, փականով եղջերափողը՝ զուտ ձայնածաւալային տեսանկիւնէն, կը պարփակէ Զուհաճեանի ձայնածաւալը: Բայց փոխարէնը կը սրուի Զուհաճեանի նուագարանին բարձր ձայնամասը:

*Biugolo in Mi b*-ի Զուհաճեանի ձայնածաւալներն են.

Marcia No. 2

գրուած ձայնածաւալ



իրական հնչողութիւն



Marcia No. 3

գրուած ձայնածաւալ



իրական հնչողութիւն



Marcia No. 4

գրուած ձայնածաւալ



իրական հնչողութիւն



Այսինքն, ամբողջութեամբ անոնց ձայնածաւալը կ'ըլլայ այսպէս.

գրուած ձայնածաւալ



իրական հնչողութիւն



Ասիկա պատշաճ է բարձր *մի պեմոլ* բանալիով եղջերափողին համար:

Հակառակ այս բարդ հարցերուն, անուանումներու եւ ձայնաշարի վերոյիշեալ բոլոր գրութիւններէն կարելի է ուրուագծել՝ որ յիշեալ *corno a segnale in Si b*-ը եւ *biugolo in Mi b*-ը կը ներկայացնեն բանալիով եղջերափողի *սի պեմոլ* եւ *մի պեմոլ* նուագարանները, զորս երաժշտահանը գործածած է տարբեր անուանումներով:

Կը մնայ Քայլերգ թիւ 3-ին (ձեռագիր թիւ 86) *corno segnale II in Si b*-ը: Անմիջապէս նշեմ՝ որ այս անուանումը այնքան ալ յստակ չէ ձեռագիրին մէջ: Այս նուագարանի հնգագիծին առջեւ (*ֆա*յի բանալիով) գրուած է՝ *sagno,* մինչ նախորդ հնգագիծին (*սոլ*ի բանալիով) առջեւ գրուած է՝ *cor[no] segn[ale] Si b*: Ի՞նչ կրնայ ըլլալ *sagno*-ն: Զուհաճեանի նուագարաններու անուանումները զերծ չեն ձեռագրական-ուղղագրական վրիպակներէ: Օրինակ, նոյն ձեռագիրին մէջ, *piccolo*-ն գրուած է՝ *picolo* (մէկ c-ով): Այլեւ երկու հարուածայիններուն առաջինը գրուած է՝ *tim[pani]*, բայց նոթագրուած իբրեւ ոչ-հնչիւնային նուագարան: Վերջինի նոթագրութեան հիւսուածքը, անոր յարաբերութիւնը նուագագրութեան ընդհանուր ընթացքին հետ, ինչպէս նաեւ Քայլերգներ թիւ 1 եւ 2-ի (ձեռագիրներ թիւ 87 եւ 120) մէջ *tamburo*-ի գործածութիւնը եւ *timpani*-ի բացակայութիւնը կը յուշեն՝ որ Քայլերգ թիւ 3-ի (ձեռագիր թիւ 86) *tim*-ի երկրորդ տառը վրիպակ մըն է եւ պէտք է ըլլայ՝ *tam[buro]*: Քայլերգ թիւ 2-ին (ձեռագիր թիւ 120) մէջ գրուած են *tromba basso* եւ *oficlaide,* մինչդեռ պէտք է ըլլան յաջորդաբար *tromba bassa* եւ *oficleide*: Քայլերգներ թիւ 2 եւ 4-ին (ձեռագիրներ թիւ 120 եւ 89ա) գրուած է *corno segnal,* որ պէտք է ըլլայ *corno segnale* (վերջաւորութեան e-ով): Վերադառնալով *sagno*-ին, աւելցնեմ՝ որ ան այստեղ *սի պեմոլ* նուագարան մըն է, բայց չէ նշուած *Si b*-ը, այն պարագային՝ երբ Զուհաճեան երբեք չէր մոռնար գրել այս նշումը: Այս բոլորը կրնան այն եզրակացութեան յանգեցնել՝ որ այս հնգագիծին նուագարանը պարզապէս նախորդ հնգագիծի նուագարանն (*corno segnale Si b*) է՝ զոր Զուհաճեան կրճատ գրութեամբ ու սխալ ուղղագրութեամբ գրած է *sagno*: Բայց կը մնայ ուրիշ անլուծելի խնդիր մը: Նոթագրութիւնը գրուած է *ֆա*յի բանալիով եւ ունի հետեւեալ ձայնածաւալը.

գրուած ձայնածաւալ



իրական հնչողութիւն



որ բաւական ցած է մեզի յայտնի թէ՛ բանալով եղջերափող *սի պեմոլ*էն եւ թէ՛ փականով եղջերափող *սի պեմոլ*էն:

Հրատարակութեանս մէջ, ելլելով բացառապէս ձեռագրական տուեալներէն, Քայլերգ թիւ 3-ի (ձեռագիր թիւ 86) *corno segnale Si b*-ը պայմանականօրէն անուանեցի *I*, իսկ *sagno*-ն ընդունեցի իբրեւ *corno segnale II Si b*, զանոնք միացնելով ոլորուն փակագիծով (brace), կատարողին թողելով վերջինին գործնական-յարաբերական լուծումը:

Ի վերջոյ՝ *bombardino* եւ *bombardone* նուագարաններուն մասին:

Քայլերգներ թիւ 1 (ձեռագիր թիւ 87), 2 (ձեռագիր թիւ 120) եւ 3-ի (ձեռագիր թիւ 86) պղինձէ փողայիններու վերջին նուագարանը Զուհաճեան յաջորդաբար գրած է՝ *bombardon, bombar[.]* եւ *bom[.]*, բոլորն ալ *ռէ*ի մէջ, որոնք ունին հետեւեալ ձայնածաւալները.

Marcia No. 1



Marcia No. 2



Marcia No. 3



Այսինքն՝ ընդհանուր ձայնածաւալն է.



Ասիկա իտալերէն *bombardone* նուագարանն է, որ իտալերէն կը կոչուի նաեւ *flicorno basso-grave*, իսկ անգլերէն, գերմաներէն եւ ֆրանսերէն՝ *bombardon*[19]: Իր օփերաներու բեմական փողային նուագախումբերուն (stage bands) մէջ, Վերտի թուպա (tuba) նուագարանը կը գործածէր *bombardone* անուանումով[20]: Թէեւ *bombardone* տարածուած էր *ֆա* եւ *մի պեմոլ* տարբերակներով[21], բայց որոշ տեղեր՝ ինչպէս Գերմանիայի մէջ, ան կը գործածուէր իբրեւ ոչ-փոխադրական (non-transposed) նուագարան[22]: Ձայնածաւալն է հետեւեալը[23].



Բաց աստի, Քայլերգ թիւ 1-ին (ձեռագիր թիւ 87) մէջ, պղինձէ փողայիններու նախավերջին նուագարանը գրած է *bombardia*, դարձեալ *ռէ*ի մէջ, որ ունի հետեւեալ ձայնածաւալը.



Պէտք է ըլլայ *bombarda* կամ *bombardino* նուագարաններէն մէկը: Գոյութիւն ունի իտալերէն *bombarda* անունով երկու փողային նուագարան: Անոնցմէ մէկը կը պատկանի օպուայի ընտանիքին, ձայնածաւալը կը գտնուի օպուայէն մէկ ութեակ ցած եւ ունի չեփորանման հնչողութիւն[24]: Ասիկա, բնականաբար, չի կրնար Զուհաճեանի նախատեսածը ըլլալ: Երկրորդ նուագարանը իտալերէն կը կոչուի *bombarda a 4 pistoni* (քառամխակ պոմպարտա): Բայց այստեղ ալ անուանումի խառնաշփոթութիւն կայ: Եթէ հետեւինք ***Կրով բառարանի*** տուեալներուն, կը նկատենք՝ որ *bombarda a 4 pistoni*-ի իտալերէն հոմանիշներն են՝ *flicorno basso* եւ *eufonio*, որոնք կը համապատասխանեն քառափական էօֆոնիումին (four-valved euphonium)[25]: *Bombardino*-ի բացատրութիւններէն մէկուն մէջ, վերջինիս իբրեւ իտալերէն հոմանիշ կը յիշատակուի նոյնպէս *flicorno basso* եւ *eufonio*, այլեւ՝ *baritono* անուանումները, եւ նոյնպէս զայն կը համատեղուի քառափական էօֆոնիումին հետ[26]: Իսկ նոյն *bombardino*-ի ուրիշ բացատրութիւններու մէջ, անոր իտալերէն հոմանիշը կը նշուի միայն *baritono*[27], կամ միայն *flicorno*[28], զայն համատեղելով, այս անգամ, եռափական էօֆոնիումի (three-valved euphonium) հետ[29]: Այս շփոթութիւնը պատահականութեան արդիւնք չէ, քանի որ նուագարաններուն հին անուանումները այնքան բազմազան էին եւ զուրկ միօրինակութենէ՝ որ դժուար է երբեմն հասկնալ անոնց իսկութիւնը: Բայց ընդհանուր հետեւութեամբ կարելի է եզրակացնել՝ որ նախատեսուած նուագարանը *bombardino*-ն է, որ կը համապատասխանէ

էօֆոնիումին (euphonium), կամ՝ միեւնոյնն է, թենոր թուպային (tenor tuba)։ *Կրով բառարանը* էօֆոնիումի ձայնածաւալը կը նշէ այսպէս[30].



որուն բաղադրեալ ձայնաշարն է հետեւեալը[31].



Ասիկա կը համապատասխանէ Զուհաճեանի ձայնածաւալին։ Յիշենք՝ որ իր բեմական նուագախումբերուն մէջ (stage bands) Վերտի քովքովի կը գործածէր *bombardino* եւ *bombardone*[32]։

Կը մնայ Քայլերգ թիւ 2-ի (ձեռագիր թիւ 120) պղինձէ փողայիններու վարէն երրորդ նուագարանը՝ *bom[.] Fa*-ն, որ գրուած է *սոլ*ի բանալիով եւ ունի հետեւեալ ձայնածաւալը.




Ան կը համապատասխանէ վերոյիշեալ *bombarda*-ի ձայնածաւալին, որ կը տարածուի օպուայէն մէկ ութեակ ցած։ Բայց վերջինս օպուայի ընտանիքէն է եւ չի կրնար Զուհաճեանի նախատեսած պղինձէ փողայինն ըլլալ։ Կը մնայ ենթադրել՝ որ ան *flicorno*-ի տարատեսակներէն մէկն է, հաւանաբար՝ *flicorno contralto*, որ գոյութիւն ունի *ֆա, մի պեմոլ* եւ *ռէ* լարուածքներով[33]։

Հարկաւոր է աւելցնել՝ որ հին նուագարաններու անուանումներուն որոնումը չի կրնար սահմանափակուիլ բառարաններու եւ ուսումնասիրութիւններու տուեալներով։ Ժամանակին գոյութիւն ունէին նուագարաններու խօսակցական տարբերակներ, որոնք տարբեր էին մէկ քաղաքէն միւսը։ Երաժշտահանները երբեմն կը հետեւէին խօսակցական սկզբունքին, որ չէ արձանագրուած գիտական աղբիւրներու մէջ։ Ուրեմն, հին նուագարաններու քննութիւնը պէտք է պարփակէ նաեւ տեղական-խօսակցական տուեալները, որոնք յաճախ սակաւաթիւ են կամ կորսուած։

Զորս քայլերգներու միւս նուագարաններուն ինքնութեան սահմանումները դժուարութիւն չեն ներկայացներ, քանի որ անոնց անուանումները համապատասխան են ընդունուած արդի եզրերուն, նոյնիսկ երբ նուագարաններէն ոմանք այսօր դարձած են անգործածելի։

Արդարեւ, ժամանակակից կատարողին համար այնքան ալ պէտք չէ յուզէ այս նուագարաններուն իսկութիւնը յայտնաբերելու գաղափարը։ Այսօրուան հռչակաւոր նուագախումբերուն համար ընդունուած երեւոյթ է գործածութենէ դուրս մնացած (obsolete) նուագարանները փոխարինել ժամանակակից նուագարաններով՝ որոնք հնչողութեամբ, եւ մանաւանդ՝ ձայնաշարով, մօտ են հիներուն։ Փողային նուագարաններու գիտակ նուագավար մը կրնայ Զուհաճեանի օգտագործած հին նուագարանները փոխարինել նուագագրութեան (score) էութեան համապատասխանող արդի տարբերակներով։

Ուրիշ հարց՝ եթէ խօսինք հին նուագարաններով (period instruments) կազմուած նուագախումբերուն մասին, որոնց նպատակն է Պախի, Մոցարթի, Պեթհովէնի գործերը կատարել երաժշտահաններու ժամանակուայ նուագարաններով։ Բայց ասիկա արդէն յատուկ խմբաւորումներու մասին է։ Պեռլինի Ֆիլհարմոնիքը, Վիեննայի Ֆիլհարմոնիքը եւ ուրիշ հռչակաւոր նուագախումբեր կը նախընտրեն պահպանել նուագախումբի արդի հնչողութիւնը՝ հին նուագարանները կամ նուագարանային կազմերը փոխարինելով արդի նուագարաններով։

Հրատարակութեանս մէջ, անուանումները, նուագարաններու յաջորդականութիւնը եւ ձայնակայքային նշանները (key signatures) ներկայացուցած եմ ձեռագիրին նման՝ առանց փոփոխութեան, սրբագրելով միայն ձեռագրական-ուղղագրական վրիպակները։

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1.-*Տե՛ս* Հ. Քեր. Վ. Քուչներեան, «Անդրէաս վարժապետ, Հանգուցեալ ի Սիմֆերոփոլ Տաւրիոյ, 1856 Մարտ 13», *Բազմավէպ*, ամսաթերթ, Վենետիկ, Ա. պրակ, 1881, էջ 45-47:

2.-*Տե՛ս* անդ, էջ 44:

3.-Անոնց դաշնակի փոխադրութիւնները տպագրած են Վենետիկի Մխիթարեան Հայրերը, *տե՛ս Բազմավէպ*, Բ. պրակ, 1881, էջ 117-119 եւ Գ. պրակ, 1881, էջ 227-230:

4.-ԶԳԱԹ-ի Զուհաճեանի ձեռագիրները 1990-ականներուն սկիզբը ենթարկուեցան վերամշակումի եւ ստացան նոր թուագրումներ: Ես պիտի նշեմ թէ՛ հին եւ թէ՛ նոր թուագրումները: Օրինակ, ԶԳԱԹ ԶԳ 8 (ՀԹ 3) կը նշանակէ՝ որ տուեալ ձեռագիրի այսօրուան թուագրումն է 8, որ նախապէս՝ հին թուագրութեամբ (ՀԹ) եղած է 3:

5.-Քարլ Կէյրինկէր [Karl Geiringer], *Musical Instruments: Their History from the Stone Age to the Present Day* [*անգլերէն*, Երաժշտական նուագարաններ. իրենց պատմութիւնը Քարէ Դարէն մինչեւ ներկայ օրերը], թրգմն.՝ Պերնարտ Միալ [Bernard Miall], Լոնտոն, 1943, էջ 218:

6.-Մայքըլ Քեննետի [Michael Kennedy], "Key (Keyed) Bugle" [*անգլերէն*, Բանալիով եղջերափող], *The Oxford Dictionary of Music* [Երաժշտութեան Օքսֆորտ բառարան], Oxford University Press, 1998, էջ 466:

7.-Քարլ Կէյրինկէր, նշ. աշխ.ը, էջ 284:

8.-Ռալֆ Թ. Տիւտճըն [Ralph T. Dudgeon], "Keyed brass" [*անգլերէն*, Բանալիով պղինձէ փողային], *The Cambridge Companion to Brass Instruments* [Քամպրիճի ուղեցոյցը պղինձէ փողային նուագարաններուն], խմբագիրներ՝ Թրեւոր Հըրպըրթ [Trevor Herbert] եւ Ճոն Ուալաս [John Wallace], Քամպրիճ, 1997, էջ 135:

9.-Արնոլտ Մայըրս [Arnold Myers], "Instruments and Instrumentation of British Brass Bands" [*անգլերէն*, Բրիտանական պղինձէ փողային նուագախումբերու նուագարանները եւ գործիքաւորումը], *The British Brass Band: A Musical and Social History* [Բրիտանական պղինձէ փողային նուագախումբը. երաժշտական եւ ընկերային պատմութիւն մը], խմբագիր՝ Թրեւոր Հըրպըրթ [Trevor Herbert], Oxford University Press, Նիւ Եորք, 2002, էջ 158:

10.-*Տե՛ս* Անթոնի Պէյնս [Anthony Baines] եւ Թրեւոր Հըրպըրթ [Trevor Herbert], "Bugle" [*անգլերէն*, Եղջերափող], *The New Grove Dictionary of Music and Musicians* [Երաժշտութեան եւ երաժիշտներու նոր Կրով բառարան], խմբագիրներ՝ Ս. Սատի [S. Sadey] եւ Ճ. Թիրէլ [J. Tyrrell], Բ. խմբագրութիւն, Լոնտոն, 2001:

11.-*Տե՛ս* Փերսի Ա. Շոլս [Percy A. Scholes], "Bugle" [*անգլերէն*, Եղջերափող], *The Oxford Companion to Music* [Օքսֆորտի ուղեկիցը երաժշտութեան], Ը. խմբագրութիւն, Oxford University Press, 1950, էջ 125. Ուիլլի Ափըլ [Willi Apel], "Brass Instruments", [*անգլերէն*, Պղինձէ փողային նուագարաններ], *Harvard Dictionary Music* [Երաժշտութեան Հարըըրտ բառարան], Բ. հրատ., Քամպրիճ, Մասաչուսեց, 1979, էջ 109):

12.-*Տե՛ս* Ռալֆ Թ. Տիւտճըն [Ralph T. Dudgeon], "Keyed Bugle" [*անգլերէն*, Բանալիով եղջերափող], *The New Grove Dictionary of Music and Musicians* [Երաժշտութեան եւ երաժիշտներու նոր Կրով բառարան], խմբագիրներ՝ Ս. Սատի [S. Sadey] եւ Ճ. Թիրէլ [J. Tyrrell], Բ. խմբագրութիւն, Լոնտոն, 2001:

13.-*Տե՛ս* Ռալֆ Թ. Տիւտճըն, "Keyed brass", նշ. աշխ.ը, էջ 136:

14.-*Տե՛ս* Անթոնի Պէյնս [Anthony Baines], *Brass Instruments: Their History and Development* [*անգլերէն*, Պղինձէ փողային նուագարաններ. անոնց պատմութիւնը եւ զարգացումը], Dover Publications, Նիւ Եորք, 1993, էջ 197:

15.-*Տե՛ս* Ռալֆ Թ. Տիւտճըն, "Keyed Bugle", նշ. աշխ.ը:

16.-*Տե՛ս* Անթոնի Պէյնս [Anthony Baines] եւ Թրեւոր Հըրպըրթ [Trevor Herbert] "Flugelhorn", *The New Grove Dictionary of Music and Musicians* [*անգլերէն*, Երաժշտութեան եւ երաժիշտներու նոր Կրով բառարան], խմբագիրներ՝ Ս. Սատի [S. Sadey] եւ Ճ. Թիրէլ [J. Tyrrell], Բ. խմբագրութիւն, Լոնտոն, 2001. Արնոլտ Մայըրս, նշ. յօդ.ը, էջ 170:

17.-*Տե՛ս* Սեսիլ Ֆորսիթ [Cecil Forsyth], *Orchestration* [*անգլերէն*, Գործիքաւորում], Dover Publications, Նիւ Եորք, 1982, էջ 173. Հեքթոր Պեռլիոզ [Hector Berlioz] եւ Ռիչարտ Շթրաուս [Richard Strauss], *Treatise on Instrumentation* [*անգլերէն*, Գործիքաւորումի ձեռնարկ], թրգմն.՝ Թէոտոր Ֆրոնթ [Theodore Front], Dover Publications, Նիւ Եորք, 1991, էջ 336:

18.-*Տե՛ս* Անտրու Սթիլըր [Andrew Stiller], *Handbook of Instrumentation* [*անգլերէն*, Գործիքաւորումի ձեռնարկ], University of California Press, 1985, էջ 92:

19.-*Տե՛ս* "Flicorno", *The New Grove Dictionary of Music and Musicians* [*անգլերէն*, Երաժշտութեան եւ երաժիշտներու նոր Կրով բառարան], խմբագիրներ՝ Ս. Սատի [S. Sadey] եւ Ճ. Թիրէլ [J. Tyrrell], Բ. խմբագրութիւն, Լոնտոն, 2001. Արնոլտ Մայըրս, նշ. յօդ.ը, էջ 170. Քլիֆորտ Պեւան [Clifford Bevan], "Bombardon", նոյն տեղը:

20.-*Տե՛ս* Ռալֆ Թ. Տիւտճըն, "Keyed brass", նշ. աշխ.ը, էջ 151:

21.-*Տե՛ս* անդ:

22.-*Տե՛ս* Հեքթոր Պեռլիոզ եւ Ռիչարտ Շթրաուս, նշ. աշխ.ը, էջ 338:

23.-*Տե՛ս* անդ:

24.-*Տե՛ս* "La Bombarda", *www.bandatolfa.it*:

25.-*Տե՛ս* "Flicorno", նշ. աշխ.ը. Քլիֆորտ Պեւան, "Bombardon", նշ. աշխ.ը:

26.-*Տե՛ս* Քլիֆորտ Պեւան, "Euphonium", նշ. աշխ.ը:

27.-*Տե՛ս* "Flicorno", նշ. աշխ.ը:

28.-*Տե՛ս* Քլիֆորտ Պեւան, "Bombardon", նշ. աշխ.ը:

29.-*Տե՛ս* անդ:

30.-*Տե՛ս* Քլիֆորտ Պեւան, "Euphonium", նշ. աշխ.ը:

31.-*Տե՛ս* Անտրու Սթիլըր, նշ. աշխ.ը, էջ 92:

32.-*Տե՛ս* Քլիֆորտ Պեւան, "Bombardon", նշ. աշխ.ը:

33.-*Տե՛ս* "Flicorno", նշ. աշխ.ը:

ՓՈՂԱՅԻՆ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ
**WIND BAND**

Flauto piccolo (in Re b)
2 Clarinetti (in Mi b)
2 Clarinetti (in Si b)
4 Corni (in Mi b)
2 Cornetti (in Si b)
2 Tromboni
Bombardino
Bombardone
Tamburo piccolo
Gran cassa

## ՓՈՂԱՅԻՆ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ
## **WIND BAND**

Flauto piccolo (in Mi b)
Ottavino (in Re b)
4 Clarinetti (in La b, Mi b, Si b)
2 Corni (in Mi b)
2 Trombe (in Mi b)
Biugolo (in Mi b)
Tromba bassa (in Mi b)
Corno segnale (in Si b)
Cornetta (in La b)
3 Corni bassi (in Si b, La b)
Bombardone (in Fa)
Oficleide
Bombardone
Tamburo piccolo
Gran cassa

## ՓՈՂԱՅԻՆ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ
## WIND BAND

Flauto piccolo (in Mi b)
2 Clarinetti (in Mi b, Si b)
2 Corni (in Mi b)
2 Trombe (in Mi b)
Biugolo (in Mi b)
2 Corni segnali (in Si b)
Trombone (in Si b)
Corno basso (in Si b)
Bombardone
Tamburo piccolo
Gran cassa

ՊՂԻՆՁԷ ՓՈՂԱՅԻՆ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ
**BRASS BAND**

2 Biugoli (in Mi b)
2 Corni segnali (in Si b)
2 Trombe (in Mi b)
2 Corni (in Si b)
Corno basso (in La b)
2 Trombe (in Mi b)
3 Corni (in La b, Fa, Mi b)
Corno basso (in La b)
2 Bassi

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ
# INDEX

ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ
ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ
«Սաքենիկ Ճ. Չագըր հիմնադրամ»

**ՏԻԳՐԱՆ ՋՈՒՀԱՃԵԱՆ**

1.-*Սուրբ, սուրբ եւ Հայր մեր*, 1999
2.-*Արշակ Բ.*, օփերա, 2000
  ա.-Երգի եւ դաշնակի համար
  բ.-Նուագագրութիւն
  գ.-Նուագախումբի նուագարանները առանձին (24 հատոր)
3.-*Աւէ Մարիա*, 2000
4.-*Կաւոթ*, ջութակի, թաւջութակի, դաշնակի եւ հարմոնիումի համար, *Զորս փիւկ*, լարային եռանուագի եւ քառանուագի համար, 2000
5.-*Ստեղծագործութիւններ դաշնակի համար*, 2005
6.-*Մեներգներ եւ խմբերգներ դաշնակի նուագակցութեամբ*, 2005
7.-*Ստեղծագործութիւններ նուագախումբի համար*, 2005
8.-*Ստեղծագործութիւններ փողային նուագախումբի համար*, 2005
9.-*Յաւերժ շարժում*, դաշնակի եւ նուագախումբի համար, 2005

**ՔՐԻՍՏԱՓՈՐ ԿԱՐԱ-ՄՈՒՐԶԱ**

*Դաշնակի ստեղծագործութիւններ*, 2000

**ՄԱԿԱՐ ԵԿՄԱԼԵԱՆ**

*Դաշնակի ստեղծագործութիւններ*, 2000

**ԱԼԵՔՍԱՆԴՐ ՍՊԵՆԴԻԱՐԵԱՆ**

*Գուշակուհին*, քառաձեռն դաշնակի համար, 2000

**ԱՐՔԱՏԻ ՔՈՒԿԷԼ**

*Էջեր ալպոմէն եւ Հայկական պար*, դաշնակի համար, 2000

**ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆ**

*Album of Selected Recordings of Aram Khachaturian's Works*, 2004

**ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆ**

1.-*Ստեղծագործութիւններ դաշնակի համար*, 2005
2.-*Ստեղծագործութիւններ ջութակի եւ դաշնակի համար*, 2005
3.-*Ստեղծագործութիւններ թաւջութակի եւ դաշնակի համար*, 2005
4.-*Ստեղծագործութիւններ սրինգի եւ դաշնակի համար*, 2005
5.-*Ստեղծագործութիւններ երգեհոնի համար*, 2005
6.-*Ստեղծագործութիւններ լարային քառանուագի համար*, 2005
7.-*Հայկական ծիսերգութիւն*, դաշնակի, ջութակի եւ թաւջութակի համար, 2005
8.-*Ռոմանս, Կարօտի երգ*, դաշնակի, սրինգի եւ ջութի համար, 2005
9.-*Ութ փոփոխակ Կոմիտաս Վարդապետի ժողովրդական եղանակի վրայ*, սրինգի, 2 ջութակի, ջութի եւ թաւջութակի համար, 2005
10.-*Պատարագ, Նախարան*, օպուսյի, 2 ջութակի, ջութի եւ թաւջութակի համար, 2005

Հասցէ՝
Armenian General Benevolent Union
15, Emad El-Din Street
Cairo - 11111
Egypt